Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

ОБЯЗАТЕЛЬНЫЙ
ЭКЗЕМПЛЯР

№ 11 ՀՈՒՆԻՍ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





6978-Կ.2


# ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ


Ս. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար


Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մշտական հոգատարություն են հանդես բերում մեր ժողովրդի բարեկեցության, նրա հոգևոր և ֆիզիկական ուժերի բազմակողմանի զարգացման նկատմամբ։

Մեր մեծ Հայրենիքում ստեղծված են բոլոր պայմանները իսկական ժողովրդական ֆիզիկական կուլտուրայի զարգացման համար։ Տարեցտարի ավելանում են առողջապահության և ֆիզիկական կուլտուրայի պետական հատկացումները։ Անցած՝ 1957 թվականին այդ գումարը կազմեց 37,9 միլիարդ ռուբլի։

Բարելավվում է ֆիզիկական կուլտուրայի և սպորտի նյութա-տեխնիկական բազան։ Ներկայումս մեր մեծ Հայրենիքի քաղաքնե-






5104-38

րում ու գյուղերում, բանվորական ավաններում ու բնակավայրերում գործում են 1.654 ստադիոն, 6.048 կոմպլեքսային սպորտային հրապարակ, 27.606 ֆուտբոլային դաշտ, 170.074 վոլեյբոլի, 32.630 բասկետբոլի և 1.349 թենիսի հրապարակ, 422 թիավարության կայան, 44 ծածկած և 494 ամառային արհեստական լողարան, 308 հրաձգարան, 188 սպորտ-որսորդական ստենդ և 5.735 տիր, 1.382 չմշկային վազքուղի, 2.322 դահուկային կայան, 351 դահուկային ցատկատեղան, 8.054 մարմնամարզական դահլիճ, 314 հեծանվային կայան, 17 հեծանվահրապարակ, 142 ավտո-մոտո ակումբ, 62 ձիասպորտային բազա, 2.400 հոկեյի դաշտ։

Մեր երկրում ֆիզիկական կուլտուրայի և սպորտի հետագա զարգացման համար հսկայական նշանակություն ունեցավ ՍՄԿՊ Կենտկոմի 1948 թվականի դեկտեմբերի 27-ի՝ «Ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացման մասին» որոշումը, որը մեր ֆիզկուլտուրայի և սպորտային կազմակերպություններից պահանջեց հասնել սովետական ֆիզկուլտուրային շարժման և սպորտի նոր վերելքի, զգալիորեն բարձրացնել սովետական սպորտսմենների վարպետությունը, այն



հաշվով, որպեսզի նվաճվի աշխարհի առաջնությունը՝ սպորտի բոլոր կարևոր ձևերում։

Մեր երկրում մասսայական ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման մասին ՍՄԿՊ Կենտկոմի որոշումից հետո անցած տասը տարիների ընթացքում ձեռք են բերվել հսկայական հաջողություններ։ Այսպես, այդ որոշումից ընդամենը երեք տարի անց ֆիզկուլտուրնիկների թիվը ՍՍՌՄ-ում ավելացավ 10 միլիոնով՝ հասնելով 17 միլիոնի։ Այժմ ՍՍՌՄ-ում հաշվվում է 198 հազար 605 ֆիզկուլտուրային կոլեկտիվ, որոնք միավորում են 19 միլիոն 370 հազար 290 ֆիզկուլտուրնիկների։

Ֆիզկուլտուրայի շարժումը աննախընթաց աճել է նաև սոցիալիստական գյուղում։ Միութենական ռեսպուբլիկաներում ստեղծված են 15 գյուղական կամավոր սպորտային ընկերություններ, որոնք հանդիսանում են մասսայական ֆիզկուլտուրային կազմակերպություններ։ Ներկայումս դրանք իրենց շարքերում համախմբում են 3 միլիոն 937 հազար 136 ֆիզկուլտուրնիկներ։

Ներկայումս մեր երկրում անցկացվող բազմաթիվ և բազմապիսի սպորտային մրցումներին մասնակցում են գործարանների, ֆաբրիկաների, կոլտնտեսությունների, ու-

սումնական հաստատությունների ֆիզկուլ-
տուրնիկների լայն մասսաներ։ Բավական է
ասել, որ վերջին երկու տարում մրցումնե-
րում մասնակցողների թիվը կազմել է մոտ
30 միլիոն մարդ։

Սովետական կառավարությունը մեծ ու-
շադրություն է դարձնում ֆիզիկական կուլ-
տուրայի և սպորտի մասնագետների պատ-
րաստման, ֆիզիկական դաստիարակության
ուսումնական հաստատությունների լայն
ցանցի ստեղծման վրա։ Ներկայումս ֆիզկուլ-
տուրայի 15 ինստիտուտներ, մանկավարժա-
կան բուհերի ֆիզդաստիարակության 50 ֆա-
կուլտետներ ամեն տարի բաց են թողնում
մի քանի հազար ֆիզկուլտուրայի դասատու-
ներ։ Բացի դրանից կադրեր են պատրաստում
ֆիզկուլտուրայի 32 տեխնիկումներ և ման-
կավարժական ուսումնարանների ֆիզդաս-
տիարակության 39 բաժիններ։ 20.880 մաս-
նագետներ աշխատում են ֆիզիկական դաս-
տիարակության բնագավառում, նրանք ունեն
բարձրագույն և միջնակարգ մասնագիտական
կրթություն։

ՍՍՌՄ-ում գործում են 193 երիտասարդա-
կան և 1.031 մանկական սպորտ դպրոց, ո-
րոնցում ընդգրկված են ավելի քան 276 հա-



զար պատանիներ ու աղջիկներ։ ՍՍՌՄ-ում
ստեղծված է 182 բժշկա-ֆիզկուլտուրային
դիսպանսեր, մոտ 3 հազար բժշկա-ֆիզկուլ-
տուրային կաբինետներ և բուժ-պրոֆիլակտիկ
հիմնարկներ, որոնցում աշխատում են ավելի
քան 10 հազար բժիշկներ։

Սովետական ֆիզկուլտուրայի շարժման և
սպորտի զարգացման գործում մեծագույն ի-
րադարձություն հանդիսացավ ՍՍՌՄ ժողո-
վուրդների առաջին Սպարտակիադայի անց-
կացումը, որը տեղի ունեցավ 1956 թ. օգոս-
տոսին, մեր մեծ Հայրենիքի մայրաքաղաք
Մոսկվայում։ ՍՍՌՄ ժողովուրդների Սպար-
տակիադայի նախապատրաստության և անց-
կացման ժամանակաշրջանում մեր ֆիզկուլ-
տուրնիկների քանակը աճեց ևս 2 միլիոնով։
Մեկ ու կես միլիոն ֆիզկուլտուրնիկներ լրաց-
րին սպորտային կարգեր, իսկ 2.000-ը դար-
ձան սպորտի վարպետներ։ Սպարտակիադայի
եզրափակիչ մրցումներին մասնակցեցին մեր
մեծ Հայրենիքի 40 ազգությունների մոտ 70
հազար ուժեղագույն սպորտսմեններ։

Սպարտակիադան մեծապես նպաստեց ֆի-
զիկական կուլտուրայի կոլեկտիվների կազ-
մակերպչական ամրապնդմանը, սպորտային
սեկցիաներում ուսումնա-մարզչական աշ-
խատանքի վերելքին, բնակչության ֆիզիկա-

կան պատրաստության արմատական բարելավմանը և սպորտսմենների վարպետության բարձրացմանը։ Ներկայումս մեր երկրում հաշվվում են 246 ՍՍՌՄ վաստակավոր մարզիչներ, 1.071 սպորտի վաստակավոր վարպետներ, 10.641 սպորտի վարպետներ, 84.362 առաջին, 354 հազար 893 երկրորդ և 1 միլիոն 335 հազար 330 երրորդ կարգային սպորտսմեններ։

Սպարտակիադայի նախապատրաստության և անցկացման շրջանում մեծ աշխատանք կատարվեց նաև մեր ռեսպուբլիկայում։ Արտադրական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և ուսումնական հաստատություններում ստեղծվեցին մոտ 400 նոր ֆիզկուլտուրային կոլեկտիվներ, ֆիզկուլտուրային պարապմունքներում ներգրավվեցին տասնյակ հազարավոր աշխատավորներ։

Համահայաստանյան և ՍՍՌՄ ժողովուրդների Սպարտակիադայի նախորդած մրցումներին մեր ռեսպուբլիկայի ֆաբրիկաներում, գործարաններում, բուհերում, կոլտնտեսություններում, սովխոզներում և ՄՏ կայաններում անցկացված միջշրջանային, փնջային մրցումներին, շրջանային ու քաղաքային սպարտակիադաներին մասնակցեցին 120 հա-



զար ֆիզկուլտուրնիկներ։ Համահայաստանյան սպարտակիադայի ֆինալային մրցումներին և մասսայական մարմնամարզական ելույթներին մասնակցեցին ավելի քան 5 հազար ֆիզկուլտուրնիկներ ու սպորտսմեններ։ Այնուհետև մեր ռեսպուբլիկայի շնորհալի սպորտսմենները հաջողությամբ մասնակցեցին ՍՍՌՄ ժողովուրդների Սպարտակիադային, որի մրցումներում սահմանեցին համամիութենական մեկ և ռեսպուբլիկական 18 ռեկորդ։ Սպարտակիադայում փայլուն հաղթանակ տարան մեր հնգամարտիկները, որոնք նվաճեցին ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից ֆիզկուլտուրայի և սպորտի կոմիտեի կողմից սահմանված ժամանակակից հնգամարտի գավաթը։

Հայաստանի սպորտսմեններ Իգոր Նովիկովը (ժամանակակից հնգամարտ) և Վարդան Հովսեփյանը (թեթև ատլետիկա), Ալբերտ Ազարյանը (մարմնամարզություն) և Վլադիմիր Ենգիբարյանը (բռնցքամարտ) դարձան Սպարտակիադայի հաղթողներ և ՍՍՌՄ չեմպիոններ։ Սովետական Հայաստանի սպորտսմենները նվաճեցին 5 ոսկե մեդալ, 9 արծաթե և բրոնզե ժետոն և 63 դիպլոմ մրցանակային տեղեր գրավելու համար։

Մեր ռեսպուբլիկայի անվանի սպորտսմեն-

ներ՝ մարմնամարզիկ Ալբերտ Ազարյանը, բռնցքամարտիկ Վլադիմիր Ենգիբարյանը, թեթև ատլետ Վարդան Հովնեփյանը, հնգամարտիկ Իգոր Նովիկովը և սուսերամարտիկ Վալենտին Չերնիկովը Սովետական Միության հավաքական թիմի կազմում մեկնեցին Ավստրալիայի Մելբուռն քաղաքը՝ մասնակցելու աշխարհի 16-րդ օլիմպիական խաղերին։ Այդ խոշորագույն մրցումներում Վ. Ենգիբարյանը, Ա. Ազարյանը և Ի. Նովիկովը նվաճեցին ոսկե մեդալ։ Հետագա ժամանակաշրջանում նոր մեծ նվաճումների հասավ Վլ. Ենգիբարյանը, որը երկրորդ անգամ դարձավ Եվրոպայի չեմպիոն և երրորդ անգամ ՍՍՌՄ չեմպիոն։ Հնգամարտիկ Ի. Նովիկովը նվաճեց աշխարհի չեմպիոնի պատվավոր կոչումը։

Ներկայումս մեր ռեսպուբլիկայում կան 2.464 ֆիզկուլտուրային կոլեկտիվներ՝ 167 հազար 439 ֆիզկուլտուրնիկներով։ 1957 թվականի ընթացքում Սովետական Հայաստանում պատրաստվել են 15.952 ՊԱՊ 1-ին և 3.254 ՊԱՊ 2-րդ աստիճանի կրծքանշանակիրներ։ Այժմ մեր ռեսպուբլիկայում կա 4 ՍՍՌՄ վաստակավոր մարզիչ, 13 ՍՍՌՄ սպորտի վաստակավոր վարպետ, 138 սպորտի վարպետ, 1.026 առաջին, 4.710 երկրորդ,



14.874 երրորդ կարգային սպորտսմեն։ Ռեսպուբլիկայում կա ֆիզիկական կուլտուրայի 840 մասնագետ, որից 586-ը բարձրագույն և 254-ը միջնակարգ մասնագիտական կրթությամբ։

Ռեսպուբլիկայում գործում են 7 խոշոր ստադիոն, մոտ 110 կոմպլեքսային սպորտ հրապարակ, 2.500 վոլեյբոլի և բասկետբոլի, ավելի քան 450 ֆուտբոլի խաղադաշտ, հարյուրավոր թեթև ատլետիկական վազքուղիներ, հատվածներ, տասնյակ լողավազաններ, մարմնամարզական դահլիճներ ու ավաններ, թենիսի հրապարակներ, հրաձգարաններ։

Սովետական սպորտսմեններն ուժեղագույններն են աշխարհում։ Վերջին երեք տարում մեր սպորտսմեններն ավելի քան 200 անգամ բարելավել են համաշխարհային ռեկորդներն ու նվաճումները։

Տարեցտարի ընդլայնվում են սովետական սպորտսմենների միջազգային կապերը։ Այսպես, միայն 1957 թ. արտասահման է մեկնել 242 սովետական սպորտային դելեգացիա, իսկ ՍՍՌՄ-ում եղել են՝ 213 օտարերկրյա պատվիրակություններ։

Վերջին տարիներս միայն մեր ռեսպուբլիկայի սպորտսմենները միջազգային ընկե-

րական հանդիպումներ են ունեցել Չինաստանի, Ռումինիայի, Հնդկաստանի, Ալբանիայի, Իրանի, Ֆինլանդիայի, Բուլղարիայի սպորտային պատվիրակությունների հետ։

Սովետական ֆիզկուլտուրային շարժման և սպորտի մեծ նվաճումների արժանի գնահատականը եղավ 1957 թվականի ապրիլի 21-ին հրապարակված ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը՝ մի խումբ սպորտսմենների, մարզիչների, ուսումնական հաստատությունների ֆիզիկական դաստիարակության դասատուների և ֆիզիկական կուլտուրայի և սպորտի աշխատողների Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին։ Կառավարական պարգևների արժանացան ընդամենը 967 մարդ։ Սովետական Հայաստանից բարձր պարգևի արժանացան 22 անվանի սպորտսմեններ, մարզիչներ և ֆիզիկական կուլտուրայի և սպորտի բնագավառի աշխատողներ։

Ներկայումս մեր ռեսպուբլիկայի ֆիզկուլտուրնիկներն ու սպորտսմենները, մարզիչներն ու ֆիզկուլտուրայի աշխատողները ակտիվորեն նախապատրաստվում են առաջիկա լուրջ քննություններին՝ Համահայաստանյան 5-րդ և ՍՍՌՄ ժողովուրդների 2-րդ սպարտակիադաներին։

---

# ՊԱՀՊԱՆԵՆՔ ՀԱՅՐԵՆԻ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ

Լայնարձակ ու գեղեցիկ է մեր հայրենի երկիրը։ Հորիզոնից հորիզոն ձգվող անծայրածիր դաշտերը, բարձրաբերձ, տեղ-տեղ սպիտակափառ գագաթներով լեռները, անընդգրկելի ու փարթամ անտառները, հարյուրավոր գետերն ու գետակները, կապուտակ լճերն ու ծովերը վարդարում, ուժ ու հզորություն են տալիս մեր հայրենի բնությանը։

Սովետական մարդիկ ջերմորեն սիրում և բարձր են գնահատում իրենց Հայրենիքը, հայրենի բնությունը և պատրաստ են է՛լ ավելի գեղեցկացնելու ու բազմապատկելու նրա հարստությունները։

Հայրենի բնության պահպանման, նրա հարստությունների արդյունավետ օգտագործման հարցը միշտ էլ եղել է մեր պարտիայի ու կառավարության ուշադրության կենտրոնում։ Կառավարությունը հսկայական գումարներ է ծախսում բնության պահպանման վրա։ Տարեցտարի մեծ չափերով ավելա-

նում են արհեստական անտառներն ու կանաչ տարածությունները, ստեղծվում են հազարավոր լճեր, լճակներ ու ջրամբարներ, ուր զարկ է տրվում թռչնաբուծության և ձկնաբուծության զարգացմանը, ամայի տարածությունները մշակվում, վերածվում են փարթամ դաշտերի ու այգիների։

Ոգեշնչված պարտիայի ու կառավարության կողմից ժողովրդի նկատմամբ ցուցաբերած հոգատարությունից, սովետական մարդիկ անդուլ, քրտնաջան աշխատանք են կատարում հայրենի բնության հարստություններն ու գեղեցկությունը անընդհատ ավելացնելու համար, միաժամանակ անարգանքի սյունին գամելով բոլոր նրանց, ովքեր ոտնահարում, փչացնում են բնության սքանչելիքներն ու բարիքները։

Բնության վերափոխման և նրա բարիքների արդյունավետ օգտագործման ուղղությամբ մեծ աշխատանքներ են կատարվել նաև մեր ռեսպուբլիկայում։

Հայկական ՍՍՌ չորրորդ գումարման Գերագույն Սովետի յոթերորդ սեսիան վերջերս քննության առավ «Հայկական ՍՍՌ բնության պահպանման մասին» հարցը և այդ առթիվ ընդունեց հատուկ օրենք։ Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Նախագահի տե-



ղակալ, դեպուտատ Ա. Կ. Շեկոյանը սեսիայում տված իր զեկուցման մեջ բազմաթիվ օրինակներ ու փաստեր բերեց բնության պահպանման, նրա հարստությունների ռացիոնալ օգտագործման և բնության վերափոխման ուղղությամբ հետագայում կատարվելիք աշխատանքների մասին։

Ո՞ւմ հայտնի չէր մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանի բնության քայքայված, անհրապույր վիճակը։ Դա մեծ մասամբ ամայի և անբերրի տարածություններ ունեցող, ծառաստանից ու կանաչից զուրկ մի երկիր էր, որն է՛լ ավելի վատթարացավ դաշնակցականների կարճատև ու անփառունակ տիրապետության ժամանակ։ Սակայն սովետական կարգերի հաստատումից հետո երկրի ինչպես տնտեսական, այնպես էլ բնության վերափոխման գործը բուռն վերելք ապրեց։ Սովետական իշխանության օգնությամբ ժողովրդի ստեղծագործական ջանքերն ուղղվեցին հայրենի բնության պահպանման, նրա հարստությունների արդյունավետ օգտագործման վրա։

Կարճ ժամանակամիջոցում լուրջ աշխատանքներ կատարվեցին հողի մակերեսի բարելավման, նրա բերրիության բարձրացման, ճահճային հողերի չորացման, աղային հո-

ղերի լվացման ու օգտագործման ուղղությամբ։ Բնության պահպանման գործում կարևոր նշանակություն ունեցավ երկրում ծավալված ջրաշինարարությունը։ Ոռոգվող հողերի տարածությունը ռեսպուբլիկայում 1921 թվականի 62,3 հազար հեկտարից 1957 թվականին հասավ 216 հազար հեկտարի։ Կառուցվեցին 520 կիլոմետր երկարությամբ 17 խոշոր ջրանցքներ։ Անջրդի հողերի և ղաերի ոռոգման շնորհիվ կազմակերպվեցին բազմաթիվ սովխոզներ ու կոլտնտեսություններ՝ բարեկարգված բնակավայրերով, այգիներով և կանաչապատ դաշտերով։ Կոլտնտեսային աշխատավորության ջանքերով կառուցվել են շատ ջրամբարներ։ Նորքի և Նոր Դալմայի ջրանցքների կառուցումը հնարավորություն տվեց մեր մայրաքաղաք Երևանը շրջապատող քարքարոտ ու մերկ բլուրների լանջերը պատել փարթամ անտառով ու կանաչով։

Մեզ մոտ կարևոր աշխատանքներ են կատարվել ինչպես վերերկրյա, այնպես էլ երկրի ընդերքի հարստությունների պահպանման և օգտագործման ուղղությամբ։ Մեր ռեսպուբլիկայի ընդերքը հարուստ է օգտակար ու թանկարժեք հանածոներով ու հանքային նյութերով։ Ընդերքի հարստություննե-



րից են նաև բուժիչ հանքային ջրերը։ Ամենուրեք հայտնի են Ջերմուկը, Արզնին, Դիլիջանը։ Վերջին տարիներում հայտնաբերվել է Արարատի, Հանքավանի, Ազատեկի և ուրիշ տարբեր քիմիական բաղադրություն ունեցող հանքային ջրեր։

Զգալի աշխատանքներ են կատարվել անտառային տնտեսության պահպանման ու զարգացման ուղղությամբ։ Հայաստանի պետական անտառների ընդհանուր ֆոնդը կազմում է 323 հազար հեկտար, որից 241 հազարը մասսիվ անտառներ են, իսկ մնացած 82 հազար հեկտարը նոսրուտներ և բացատներ են։ Բացի այդ, կան նաև 34 հազար հեկտար կոլտնտեսային անտառներ։ Մեր ռեսպուբլիկայում անտառային ֆոնդը շատ փոքր է, այն կազմում է երկրի ընդհանուր տարածության 10 տոկոսը միայն, սակայն եղած անտառների ծառակազմը հարուստ ու բազմազան է։ Սովետական իշխանության տարիներին կատարվել են մոտ 20 հազար հեկտար նոր անտառատնկումներ։

Անտառների նշանակությունը բնության պահպանման և ժողովրդական տնտեսության համար չափազանց կարևոր է։ Ամենից առաջ անտառը շինանյութի և վառելանյութի բազա է։ Անտառն ունի նաև կլիմայական

կարգավորող մեծ հատկություն, նա մեղմացնում է ամառվա և ձմեռվա ջերմության տատանումները, կարգավորում է ջրային ռեժիմը, հանդիսանում է հողի էրոզիայի դեմ պայքարելու լավ միջոց, թուլացնում է քամիների ուժը, հողը պահում է խոնավ վիճակում։ Անտառը միաժամանակ ապաստարան և սննդի բազա է հանդիսանում օգտակար վայրի կենդանիների և թռչունների համար։

Սովետական կառավարությունը հատուկ ուշադրություն է դարձնում երկրի ֆաունայի (կենդանական աշխարհի) պահպանման և զարգացման գործին։ Մեր ռեսպուբլիկայի անտառներում, լեռնային հովիտներում ու կիրճերում, լճերում ու գետերում կան բազմատեսակ ու հազվագյուտ կենդանիներ, ինչպես, օրինակ հայկական մուֆլոնը (վայրի ոչխարը), Բեզոարյան այծը, խոզը, արջը, ինչպես նաև այլ մանր գազաններ և թռչուններ։

Գերագույն Սովետի սեսիան անհրաժեշտ գտավ վայրի կենդանիների պահպանման համար ռեսպուբլիկայում ստեղծել հետևյալ երեք արգելանոցները՝

1. Գառնիի արգելոցը՝ հայկական մուֆլոններ և Բեզոարյան այծեր պահպանելու



նպատակով։ Այդ արգելոցի մեջ կմտնի հայկական ժողովրդական ավանդությունների հետ կապված Խոսրովի անտառը, որտեղ արդեն ներմուծված են ուսուրիական բծավոր եղջերուներ։

2. Դիլիջանի արգելոցը՝ Փոքր Կովկասի հյուսիսային լանջերի համար բնորոշ բուսական ու կենդանական աշխարհը պահպանելու նպատակով։

3. Բաքասի արգելոցը՝ ռեսպուբլիկայի հարավային շրջանների համար բնորոշ բուսականության և ֆաունայի պահպանման նպատակով։

Սեսիան լուրջ ուշադրություն դարձրեց մեր բնության օդն ու ջուրը զանազան աղտոտությունից զերծ պահելու հարցի վրա։

Սովետական Հայաստանը հարուստ է ճարտարապետական և պատմա-հնագիտական հուշարձաններով։ Դրանց թվին են պատկանում կուլտուրայի կոթողները, ուրարտական ամրոցները, կրոնական ու աշխարհիկ կառուցվածքները, պալատներն ու բերդերը, կամուրջներն ու իջևանները, բնակելի և այլ կառույցները, որոնց թիվը 3000-ից ավելի է։

Սովետական կառավարությունը անում է ամեն ինչ բնության պահպանման համար, բնության ստեղծած բարիքները ժողովրդի





5104-58

շահերին ծառայեցնելու համար։ Հետևապես բնության պահպանման գործը իր վրա պետք է վերցնի մեր ամբողջ ժողովուրդը։ Ագիտատորները պետք է մասսայական-բացատրական լայն աշխատանք կատարեն աշխատավորության մեջ, նրանց ոտքի հանեն բնության պաշտպանման համար։ Պետք է այնպես անել, որպեսզի ոչ մի չար ձեռք չհամարձակվի վնաս հասցնել հայրենի բնությանը, որպեսզի չարամտորեն չոչնչացվեն օգտակար վայրի կենդանիներն ու թռչունները, գետերում ու լճերում՝ ձկներն ու ջրային թռչունները, աղտոտվեն օդն ու ջուրը, վնաս հասցվեն ծառերին ու կանաչ տարածություններին, պատմական հուշարձաններին և մեր բնության այլ հարստություններին։

Սեսիայի կողմից ընդունած «Հայկական ՍՍՌ բնության պահպանման մասին» օրենքը խիստ պատիժ է նախատեսնում բոլոր նրանց, որոնք չարամտորեն վնաս կհասցնեն կամ կոչնչացնեն բնության բարիքներն ու հարստությունները։

Հայրենի բնության ստեղծած հարստությունների ամենօրյա խնամքը, պահպանումն ու զարգացումը խոշոր ավանդ կհանդիսանա ռեսպուբլիկայի հետագա ծաղկման ու բարգավաճման համար։

---



# ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ ԳՈՐԻՍՈՒՄ

ՔՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Գորիսի շրջսովետի գործկոմի նախագահ

Գորիսի շրջանը բոլոր պայմաններն ունի անասնաբուծության հետագա զարգացման և նրա մթերատվության բարձրացման համար։ Անցյալ տարի շրջանի կոլտնտեսությունները խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի աճման պլանը կատարեցին 101, իսկ մանր եղջերավոր անասուններինը՝ 128 տոկոսով, կամ 1956 թվականի համեմատությամբ 1957 թվականին խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացավ 1.095 գլխով, այդ թվում կովերինը՝ 650 գլխով, մանր եղջերավոր անասուններինը՝ 1.937 գլխով, խոզերինը՝ 825 և թռչուններինը՝ 1.394 թևով։ Շրջանի Արավուս, Խոզնավար, Կորնիձոր, Խանածախ, Բռուն և Գորիս գյուղերի կոլտնտեսությունները ավելի բարձր արդյունքների հասան։

Լուրջ հաջողություններ են ձեռք բերվել նաև կաթի, մսի, բրդի և անասնապահական մյուս մթերքների արտադրության գծով։ 1956 թվականի համեմատությամբ, 1957 թվականին շրջանի կոլտնտեսությունները մոտ 600 հազար կիլոգրամ ավել կաթ արտադրեցին։ Բոլոր կոլտնտեսություններն էլ գրեթե գերակատարեցին կովերի կաթնատվության պլանը և սահմանված 1.074 կիլոգրամի դիմաց ամեն մի կովից ստացան 1.149 կիլոգրամ։

Կաթի արտադրության գծով առանձնապես բարձր արդյունքների հասավ Բռուն գյուղի կոլտնտեսությունը։ Կովերի խնամքը և կերակրումը լավ կազմակերպելու շնորհիվ, կոլտնտեսությունը ամեն մի կովից 1.400 կիլոգրամ կաթի դիմաց ստացավ 1.650 կիլոգրամ կաթ։ Աշխատանքի երկարամյա փորձ ունեցող կթվորուհի ընկ. Ա. Մաշուրյանը իր խնամած յուրաքանչյուր կովից ստացավ 2.200 կիլոգրամ կաթ, Ն. Հայրապետյանը իր խնամքին հանձնված 12 կովից ստացել է նույնքան առողջ հորթ և յուրաքանչյուր կովի կաթնատվության պլանը գերակատարել է 300 կիլոգրամով։

Շրջանի կոլտնտեսությունները բարձր արդյունքների հասան նաև յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց կաթ



արտադրելու գործում։ Արավուս գյուղի կոլտընտեսությունը 100 հեկտար հողատարածության դիմաց ստացել է 205 ցենտներ կաթ, նախատեսած 150,5 ցենտների դիմաց, Շունուխի կոլտնտեսությունը՝ 206 ցենտներ, 170-ի փոխարեն։

Շրջանի կոլտնտեսությունները զգալի հաջողություններ ձեռք բերեցին մսի արտադրության բնագավառում։ 1956 թվականի համեմատությամբ, 1957 թվականին, յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց մսի արտադրությունը ավելացավ 15 ցենտներով։ Առանձնապես հիշատակության է արժանի Խանածախ գյուղի անասնապահների աշխատանքը։ Դեռ ձմռան ամիսներին կոլտնտեսությունը առանձնացրեց խոշոր և մանր եղջերավոր անասունների հատուկ հոտեր և դրեց բտման տակ։ Լավ կազմակերպելով անասունների խնամքն ու կերակրումը՝ նախ մսուրային շրջանում, ապա ամռանը՝ յայլաղներում, կոլտնտեսությունը նախատեսված պլանից 1.000 ցենտներ միս ավել արտադրեց։

Խոշոր են հաջողությունները առանձնապես ոչխարաբուծության ուղղությամբ։ Անցյալ տարի բրդի արտադրության պլանը շրջանի կոլտնտեսությունները կատարեցին 166 տո-

կոսով, պետությանը հանձնելով 1.342 ցենտներ բարձրորակ բուրդ։ Նախատեսված 2,8 կիլոգրամի դիմաց, կոլտնտեսությունները ամեն մի ոչխարից ստացան 3 կիլոգրամ բուրդ։ Բրդի արտադրությունն ավելացնելու ուղղությամբ խրախուսելի աշխատանք է կատարում Խանածախ գյուղի կոլտնտեսությունը, որը 134 ցենտներ պլանի փոխարեն 1957 թվականին ստացավ 166 ցենտներ բուրդ։ Ստացված ամբողջ բրդի մոտ 60 տոկոսը նուրբ և կիսանուրբ է։ Միայն բրդի դիմաց կոլտնտեսությունը ստացավ կես միլիոն ռուբլի եկամուտ։ Բրդի արտադրության ավելացման գծով լուրջ հաջողություններ ձեռք բերեցին նաև Ազատաշեն, Բայանդուր և Շինուհայր գյուղերի կոլտնտեսությունները։

Շրջանի կոլտնտեսությունները յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց 265 կիլոգրամի փոխարեն ստացան 276 կիլոգրամ բուրդ, իսկ Խանածախ գյուղի կոլտնտեսությունը՝ մինչև 531 կիլոգրամ, Արավուսի կոլտնտեսությունը՝ 573, Բռունինը՝ 405 կիլոգրամ բուրդ և այլն։

Խանածախ գյուղի առաջավոր հովիվ Արամ Առուստամյանը, Խնձորեսկ գյուղից՝ Գրիշա Արզանյանը, Շինուհայր գյուղից՝ Գրիգոր Կարապետյանը, Գորիս գյուղից՝ Սերյոժա



Շալունցը և շատ ուրիշներ իրենց խնամքին հանձնված ամեն մի ոչխարից ստացել են 4,2-ից մինչև 4,5 կիլոգրամ բուրդ։

Մեր շրջանի կոլտնտեսությունների կարևորագույն և եկամտաբեր ճյուղերից մեկը մեղվաբուծությունն է։ Ամեն տարի կոլտնտեսությունները հսկայական եկամուտներ են ստանում։ 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, շրջանի կոլտնտեսությունները 45 հազար կիլոգրամ մեղր ստացան։ Առաջավոր շատ կոլտնտեսություններ մեղրի ռեկորդային բերք ստացան։ Տեղ գյուղի կոլտնտեսությունը իր 700 մեղվաընտանիքի յուրաքանչյուրից ստացավ 30 կիլոգրամ մեղր, պլանով նախատեսված 12 կիլոգրամի փոխարեն։ Այս կոլտնտեսության անվանի մեղվաբույծներ Եփրեմ և Համո Վարդանյանները յուրաքանչյուր մեղվաընտանիքից ստացան 32—35 կիլոգրամ մեղր։ Նրանք դրան հասան այն բանի շնորհիվ, որ մեղուների կերակրումն ու խնամքը լավ էին կազմակերպել։ Հաճախակի նրանք մեղուները տեղափոխում էին կորնգանի դաշտերը և այգիները, որտեղ ծաղիկներ շատ կային։ Գորիս գյուղի «Ավանգարդ» կոլտնտեսությունը ստացավ 17 հազար 777 կիլոգրամ մեղր, կամ յուրաքանչյուր մեղվաընտանի-

քից 29 կիլոգրամ մեղր։ Մեղրի բարձր բերք ստացան նաև Կորնիձոր, Խանածախ, Տաթև և շատ ուրիշ կոլտնտեսություններ։

Սակայն անցյալ տարվա հաջողությունները չեն կարող բավարարել մեզ։ Մեր ռեզերվներն ավելի շատ են և հնարավորությունները մեծ։

Մեր կոլտնտեսությունները որոշել են 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, մսի արտադրությունը (սպանդանոցային քաշով) ավելացնել 14 տոկոսով, կաթինը՝ 12, բրդինը՝ 12, ձվինը՝ 13 տոկոսով։ Առանձին կոլտնտեսություններ պայքարում են ավելի բարձր ցուցանիշների համար։ Այս տարի խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կավելանա 1.500 գլխով, ըստ որում կովերինը՝ 400 գլխով։ Կովերի գլխաքանակի ավելացման հետ միասին, զգալիորեն կբարձրանա նաև նրանց կաթնատվությունը։ 1957 թվականի համեմատությամբ մեր կոլտնտեսությունները 1958 թվականին կարտադրեն մինչև մեկ միլիոն կիլոգրամ ավելի կաթ։

Մեր կոլտնտեսությունները այս տարի պայքարում են յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել մինչև 200 ցենտներ կաթ և 30 ցենտներ



միս։ Նրանք այժմվանից սկսել են բուծել և գիրացնել մսամթերման հանձնվող անասունները, այն հաշվով, որ պետությանը հանձնվող ամեն մի խոշոր եղջերավոր անասուն ունենա առնվազն 250—300 կիլոգրամ քաշ, խոզը՝ 120—150, ոչխարը՝ 50—60 կիլոգրամ։ Սա նշանակում է, որ 1957 թվականի համեմատությամբ, 1958 թվականին մեր կոլտնտեսությունները մինչև 6 հազար ցենտներ ավել միս կարտադրեն։

Խոշոր հաջողություններ ձեռք կբերեն նաև մեր ոչխարաբույծները։ 1957 թվականի 52 հազարի փոխարեն նրանք այս տարի ոչխարների գլխաքանակը կհասցնեն 60 հազարի։ Զգալիորեն կավելանա նաև բրդի արտադրությունը. այս տարի մենք պետությանը կհանձնենք 1434 ցենտներ բուրդ, որը մոտ 100 ցենտներով ավելի է, քան անցյալ տարի։

Ո՞րն է մեր փորձը։ Մեր ոչխարաբույծները ոչխարների սերմնավորումը կազմակերպում են այնպես, որ ծինը ստացվում է նոյեմբեր—դեկտեմբեր ամիսներին։ Սա պրոգրեսիվ մեթոդ է, որը հնարավորություն է տալիս գարնանը նորածին գառները շուտ դուրս բերել արոտ, որը չի ենթարկվում գարնանային վաղ ցրտերին։ Աշդ. գառները

աշնանն ունենում են մինչև 30—40 կիլոգրամ կենդանի քաշ և խուզվում են 6 ամսական հասակում, որոնցից յուրաքանչյուրը տալիս է մինչև 1,2—1,5 կիլոգրամ բուրդ։ Կիրառելով այդ պրոգրեսիվ մեթոդը, այժմ մեր ոչխարաբուծական ֆերմաներում կան մինչև 30 հազար գառ, որոնք անկորուստ պահպանվում են։

Տարիներ շարունակ մեր կոլտնտեսությունները թերակատարում էին խոզերի և թռչունների գլխաքանակի պլանը։ Այս տարի այդ ճյուղերի զարգացման վրա մեծ ուշադրություն է դարձվում։ Բոլոր կոլտնտեսություններում կազմակերպվել են խոզաբուծական և թռչնաբուծական ֆերմաներ, որտեղ բարելավվել են խոզերի և թռչունների խնամքն ու կերակրումը։

Արդեն ակնհայտ են դարձել առաջին հաջողությունները։ Կատարելով գյուղատնտեսության բոլոր աշխատողներին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Դիմումի պահանջները Խանածախ, Խոզնավար, Կորնիձոր և շատ ուրիշ կոլտնտեսություններ անցյալ տարվա համեմատությամբ հավերի գլխաքանակը կավելացնեն 2—3 անգամ։

Անասնաբուծության հետագա զարգաց-



ման գործում վճռական նշանակություն ունի կերի կայուն բազայի ստեղծումը։ Այս տարի միամյա և բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունը 1957 թվականի համեմատությամբ կավելացվի 300 հեկտարով։ Տեղ, Խնձորեսկ, Գորիս, Կորնիձոր և շատ ուրիշ կոլտնտեսություններ արդեն գերակատարել են իրենց խոտաբույսերի ցանքերը։ Ցանվում են նաև ավելի շատ սիլոսային կուլտուրաներ, քան անցյալ տարի։ Մաքրվում և բարելավվում են մարգագետինները։ Այս և այլ միջոցառումները հնարավորություն են տալիս այս տարի կուտակել ավելի շատ կեր, քան անցյալ տարի։

Այժմ մի քանի խոսք անասնաբուծության հեռանկարային զարգացման մասին։ Մեր կոլտնտեսությունները ուշի-ուշով մշակեցին 1959—1965 թվականների իրենց հեռանկարային պլանները։ Այդ պլաններում լուրջ ուշադրություն է դարձվում անասնաբուծության հետագա զարգացման հարցերին։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1958 թվականի պլանի համեմատությամբ մեր շրջանում կավելացվի 6 հազար գլխով, ոչխարներինը՝ 30 հազար գլխով, խոզերինը՝ 3 հազար գլխով, թռչուններինը՝ 25 հազար թևով, մեղվաընտանիքներինը՝ 5

Ֆաղարով: Կավելանան նաև անասնաբուծությունից ստացվող մթերքները: Յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը կհասցվի 2000 կիլոգրամի, յուրաքանչյուր ոչխարի բրդատվությունը կհասցվի 4,5 կիլոգրամի, 100 հեկտար հողատարածության վրա կովերի գլխաքանակը կհասցվի 20-ի, ոչխարներինը՝ 300 գլխի, բրդի արտադրությունը կհասցվի 350 կիլոգրամի, կաթի արտադրությունը 300 ցենտների, մսինը՝ 70 ցենտների:

Այդ պլանների կատարման գործում կասկած չկա, որ խոշոր դեր կկատարեն ՄՏ կայանների վերակազմման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումի և ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայի որոշումների կենսագործումը: Մեր կոլտնտեսությունները գործնական պայքար են ծավալել իրականացնելու ՍՄԿՊ XX համագումարի որոշումները և հաջողությամբ կատարելով բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, մսի, յուղի արտադրությամբ մոտակա տարիներին ԱՄՆ-ին հասնելու մասին մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պահանջը, ստեղծելով անասնապահական մթերքների առատություն:

---

*ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ*

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

(ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

Կոմունիստական և բանվորական պարտիաների ղեկավարությամբ ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ծավալվում է աշխատավոր գյուղացիության մասսայական շարժում՝ գյուղի արտադրական կոոպերացման համար: Տարբեր երկրներում գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման տեմպն ու մակարդակը, ինչպես նաև ձևերը, որոնցում այն իրականացվում է, տարբեր են: Դա բացատրվում է պատմական ու ազգային առանձնահատկություններով, յուրաքանչյուր երկրի տնտեսական և քաղաքական կոնկրետ պայմաններով: Բայց գյուղում սոցիալիզմի հաղթանակի ուղին ընդհանուր է: Դա մանր մասնավոր գյուղացիական տնտեսությունների արտադրական միջոցների կամավոր հանրայնացման, գյուղա-

*ցիության կոլեկտիվ աշխատանքի անցնելու ուղին է։*

*Այդ ստուգված ուղիով են ընթանում Եվրոպայի և Ասիայի եղբայրական սոցիալիստական երկրները։*



ՉԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ առաջիններից էր ժողովրդական դեմոկրատիայի երկրներից, որը իրագործեց գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը: 1955 թվականի երկրորդ կիսամյակում ծավալված գյուղացիության մասսայական կոոպերացումը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային հնարավորություն տվեց արդեն 1956 թվականի գարնանը հիմնականում ավարտել գյուղի սոցիալիստական վերակառուցումը: 500 միլիոնանոց չինական գյուղացիության սոցիալիստական կոոպերացումը պատմական մեծագույն խնդիր էր, որը դրել էր երկրի առջև Չինաստանի Կոմունիստական պարտիան: Այդ խնդիրը կատարվեց նախատեսված ժամկետից տասը տարի շուտ:

☆ *1957 թվականի գարնանը ռեսպուբլիկայում հաշվվում էր մոտ 752 հազար գյուղատնտեսական կոոպերատիվ, ուր ընդգրկ-*



*ված էին ավելի քան 118 միլիոն 880 հազար տնտեսություն, կամ երկրի ամբողջ գյուղացիական տնտեսությունների 97 տոկոսը։ Այժմ կոոպերատիվների թիվը, խոշորացման պատճառով, որոշ չափով պակասել է։*

✪ *Նոր կազմակերպված արտադրական կոոպերատիվները ամեն տարի ամրապնդվում են կազմակերպչորեն ու լիակատար կերպով դրսևորում իրենց գերազանցությունը՝ անհատական գյուղացիական տնտեսությունների նկատմամբ։*

*Արդեն 1956 թվականին ՉԺՌ-ի այն շրջաններում, որոնք չէին տուժել տարերային աղետներից, կոոպերատիվների մոտ 80 տոկոսը արտադրության աճ ունեցավ, իսկ կոոպերատիվներում միավորված գյուղացիական տնտեսությունների 75 տոկոսը ավելացրեց իր եկամուտները։*

*Վերջերս ռեսպուբլիկայի 16 պրովինցիաներում և քաղաքներում գտնվող 345 հազար գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվների ուսումնասիրություն կատարվեց։ Այն ցույց տվեց, որ այդ կոոպերատիվների մեկ քառորդը իր եկամուտով հասել կամ անցել է տեղական ունևոր միջակներին։ Իբրև կանոն կոոպերատիվների*

դաշտերում հացահատիկի և բամբակի բերքատվությունն ավելի բարձր է, քան ունեցել են ունևոր միջակները մինչև կոոպերացումը։

☆ Գյուղի կոոպերացման ավարտման հետ միասին երկրում լայն հնարավորություններ բացվեցին գյուղատնտեսական արտադրության արագ աճման համար։ 1957 թվականին Չինաստանում ուժեղ երաշտ եղավ, իսկ մի քանի վայրեր էլ տուժեցին ջրհեղեղից և տարերային ուրիշ աղետներից։ Սակայն չինական գյուղացիությունը հենվելով կոոպերատիվ տնտեսության առավելության վրա տարերքի դեմ մղվող ծանր պայքարում հաղթանակ տարավ և ավելի բարձր բերք ստացավ, քան 1956 թվականին։ Նախնական տվյալների համաձայն հավաքվեց 370 միլիարդ ցզին (185 միլիոն տոննա) հացահատիկ, որը 5 միլիարդ ցզինով (2,5 միլիոն տոննայով) ավելի է, քան եղել է 1956 թվականին, 32 միլիոն 800 հազար դան (1 միլիոն 640 հազար տոննա) բամբակ, որը մոտ 3 միլիոն 900 հազար դանով (195 հազար տոննա) ավելի է, քան եղել է 1956 թվականին։ 1957 թվականին հացահատիկի բերքը մեկ երրորդով և բամբակինը ավելի քան երկու անգամ գերա-



զանցեց առավել բերքատու, 1936 թվականի մակարդակը։ Հացահատիկի և բամբակի արտադրության աճման նման տեմպերը ոչ միայն բազմաթիվ անգամ գերազանցում են գոմինդանական Չինաստանի տեմպերը, այլև իր հետևում են թողնում զարգացած կապիտալիստական երկրներին։

Առաջին հնգամյակի ընթացքում (1953—1957 թ. թ.) ՉԺՌ-ում հացահատիկի բերքը աճեց ավելի քան 30 միլիոն տոննայով, բամբակինը ավելի քան՝ 336 հազար տոննայով։ Ավելացավ նաև գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքատվությունը և անասունների գլխաքանակը։ Դրա հետևանքով երկիրն ապահովվեց սեփական հացով (և դա տեղի ունեցավ այն ժամանակ, երբ հնգամյակում բնակչությունն ավելացավ 60 միլիոն մարդով)։ Ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերությունը հիմնականում ապահովված է հայրենական հումքով։

☆ Չինաստանի գյուղատնտեսությունը դարերով տուժել է ջրհեղեղներից և երաշտից, որոնք ծաղկուն դաշտերը վեր են ածել մեռյալ անապատների և բազմամիլիոն գյուղացիությունը դատապարտել են սովի։

Չինական գյուղացիության սոցիալիստական կոոպերացումը բարենպաստ պայման-

ներ է ստեղծել տարերային աղետների դեմ հաջողությամբ պայքարելու համար։ Չինաստանի կոմունիստական պարտիան երկրի առջև վիթխարի խնդիր է դրել՝ 12 տարվա ընթացքում հիմնականում վերջ դնել սովորական հեղեղումներին և երաշտին, 60 միլիոն հեկտարով ընդլայնել ջրովի տարածությունը:

Պարտիայի կոչով սկսած անցյալ աշնանից ամբողջ երկրով մեկ ծավալվել է մասսայական ջրաշինարարություն, որը կատարվում է գյուղացիության ուժերով։ Ամեն օր ոռոգելի ջրանցքների, ջրամբարների, լճերի ամբարտակների և ջրցան կառուցումների շինարարության վրա աշխատում են մոտ 100 միլիոն գյուղացիներ:

1957 թվականի հոկտեմբերից մինչև այս տարվա ապրիլի կեսերը ոռոգման կառուցումների վրա կատարվել է մոտ 25 միլիարդ խորանարդ մետր հողային և քարային աշխատանք։ Եթե այդ նյութերով կառուցենք մի պատ, որի լայնությունն ու բարձրությունը լինի 1 մետր, նրանով կարելի է 625 անգամ երկրագունդը փաթաթել։

Չինական գյուղացիների հերոսական աշխատանքով, որոնց ակտիվորեն օգնում են քաղաքի բնակիչները, ոռոգելի հողերի տա-



րածությունը նշված ժամանակամիջոցում 20 միլիոն հեկտարով ընդարձակվել է։ Դա գերազանցում է այն ամբողջ տարածությունը, որը մինչև երկրի ազատագրումը, ոռոգվել է մի քանի հազար տարիների ընթացքում։

Ներկայումս ՉԺՌ-ում ոռոգվող հողերի տարածությունը կազմում է ավելի քան 53 միլիոն հեկտար, կամ երկրի մշակվող հողերի համարյա կեսը։ Առաջին հնգամյակի սկզբում ոռոգվում էր ռեսպուբլիկայի մշակվող հողերի միայն 16,3 տոկոսը։

☆ Ժողովրդական կառավարությունը վիթխարի օգնություն է ցույց տալիս գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներին։ Տարեցտարի աճում են ոռոգման շինարարության, անտառապահության, քիմիական պարարտանյութերի արտադրության, վնասատուների դեմ պայքարի միջոցառումների և գյուղատնտեսության մեքենայացման բազա ստեղծելու համար կոոպերատիվներին տրվող վարկերը։

ՉԺՌ-ում առաջին հնգամյակի ընթացքում կազմակերպվել է 352 մեքենա-տրակտորային կայան, որոնք ունեին ավելի քան 10.900 տրակտոր (15-ուժանոցի վերածած)։

Արտադրական կոոպերատիվներին ակտիվորեն օգնում են վերջերս ստեղծված

*Չինաստանի գյուղատնտեսության ակադեմիան և գյուղատնտեսական գիտահետազոտական ինստիտուտները, փորձակայանները, լաբորատորիաները, ցուցադրական պետական տնտեսությունները։*

**ԿՈՐԵԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ**: *Գյուղատնտեսության կոոպերացումը, որը սկսվել է 1953 թվականի վերջերին և լայնորեն ծավալվել 1955—1956 թվականներին, արդեն մոտենում է իր ավարտմանը։* 1958 թվականի սկզբներին ռեսպուբլիկայում կար 16.032 գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվ: Դրանք միավորում էին բոլոր գյուղացիական տնտեսությունների 95,6 տոկոսը և իրենց տնօրինության տակ ունեին երկրի բոլոր ցանքատարածությունների 94 տոկոսը:

☆ *Կորեական գյուղացիության կոլեկտիվ աշխատանքը հնարավորություն տվեց զգալիորեն ավելացնելու գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունը։ 1957 թվականին ռեսպուբլիկայի դաշտերում հավաքվել է մեկ միլիոն տոննայով ավելի հացահատիկ, քան 1954 թվականին՝ եռամյա պլանի (1954—1956 թ. թ.) առաջին տարում։ Կարտոֆիլի բերքատվությունը 27*



*տոկոսով գերազանցեց 1956 թվականի բերքը։*

*Վերջին տարիներում շեշտակիորեն աճել են տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունները և բամբակի, վուշի, ծխախոտի արտադրությունը։ Զգալիորեն ավելացել է խոշոր եղջերավոր անասունների, նրբագեղմ ոչխարների, այծերի և խոզերի գլխաքանակը։ Անցյալ տարի չափազանց բարձր էր նաև մրգեղենի բերքը։*

☆ *Անընդհատ աճում են կորեական կոոպերատիվների և կոոպերատոր-գյուղացիների եկամուտները։ 1956 թվականի համեմատությամբ կոոպերատիվների անբաժանելի ֆոնդերն ավելացել են երկու անգամ։ Չքավոր գյուղացիների մեծ մասը մտնելով կոոպերատիվ, արդեն հասել է միջակներին կամ ունևոր գյուղացիների մակարդակին։*

**ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ**: *Մասնավոր արաթային տնտեսությունների արտադրական կոոպերացումը ծավալվեց ՄԺՌ-ի երկրորդ հնգամյակի տարիներին (1953—1957 թ. թ.)։*

*1957 թվականին լուրջ հաջողություններ են ձեռք բերվել ռեսպուբլիկայի գյուղատնտեսության կոոպերացման բնագավառում։ Մեկ տարվա ընթացքում ռեսպուբլիկայում*

ստեղծված է ավելի քան 100 նոր գյուղատնտեսական միավորում։ Այդպիսի միավորումներում ընդգրկված տնտեսությունների թիվը մեկ տարվա ընթացքում ավելացել է 22 հազարով, կամ 50 տոկոսով։

Ընթացիկ տարվա սկզբներին երկրում կար 658 գյուղատնտեսական միավորում, ուր մտնում էր արաթային տնտեսությունների մոտ 35 տոկոսը։ Այդ միավորումներում է գտնվում ՄԺՌ-ի անասունների ամբողջ գլխաքանակի մոտ քառորդ մասը։

☆ Անցյալ տարի գյուղատնտեսական միավորումներն ընդարձակել են իրենց ցանքատարածությունները, ավելացրել են անասունների գլխաքանակը և կուտակել են զգալիորեն ավելի շատ կեր, քան նախորդ տարում։

☆ Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման գործում կարևոր դեր են խաղում պետական խոտհունձ կայանները և մեքենա-անասնապահական կայանները, որոնք ունեն զանազան մեքենաներ և մեծ օգնություն են ցույց տալիս գյուղատնտեսական միավորումներին ու մասնավոր արաթային տնտեսություններին՝ կերերի հայթայթման, դաշտային աշխատանքների անց-



կացման, ոչխարների խուզման, անասունների փարախների կառուցման գործում։

☆ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության կոլեկտիվացման ընթացքում պետք է լուծվի առավել բարդ պրոբլեմներից մեկը՝ քոչվորական տնտեսությունների անցումը նստակյացի։

ՎՅԵՏՆԱՄԻ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ։ 1954—1956 թվականներին իրականացված ագրարային ռեֆորմը, հողազուրկ և սակավահող գյուղացիներին հանձնեց 895 հազար հեկտար կալվածատիրական հող, մեծ քանակությամբ բանող անասուններ և գյուղատնտեսական գործիքներ։ Դա զգալիորեն թեթևացրեց աշխատավոր գյուղացիության վիճակը։ Բարենպաստ նախադրյալներ ստեղծվեցին վյետնամական գյուղի արտադրական կոոպերացման տարբեր ձևերի զարգացման համար։

☆ Վյետնամի Աշխատավորների պարտիան դրել է երկրի գյուղատնտեսության աստիճանական կոոպերացման խնդիր։ Պարտիայի կոչով գյուղացիները կանգնում են կոոպերացման ուղու վրա։ Երկրում լայն թափ է ընդունել գյուղատնտեսական արտադրական կոոպերացիայի ստորին ձևի՝

աշխատանքային փոխօգնության խմբերի ստեղծման համար ծավալված շարժումը։ (Այդ խմբերում հանրայնացվում է միայն աշխատանքը, իսկ հողը, անասուններն ու գյուղատնտեսական ինվենտարը դեռևս մնում են որպես գյուղացիների մասնավոր սեփականություն)։ 1958 թվականի գարնանը ռեսպուբլիկայում կար 102 հազար այդպիսի խումբ։ Այնտեղ միավորված էր 710 հազար գյուղացիական ծուխ, կամ նրանց ընդհանուր թվի մոտ մեկ երրորդը։ Երկրում սկսեցին ստեղծվել առաջին կոոպերատիվները։ 1958 թվականի սկզբներին արդեն կային 44 այդպիսի կոոպերատիվներ։

---



# ԻՆԴՈՆԵԶԻԱ

Ինդոնեզիան գտնվում է Հարավ-Արևելյան Ասիայում, Ասիայի և Ավստրալիայի միջև ընկած Մալայան արշիպելագի կղզիների վրա։ Ինդոնեզիայի կազմի մեջ մտնում են հետևյալ հինգ գլխավոր կղզիները՝ Սումատրա, Ճավա, Կալիմանտան (Բոռնեո), Սուլավեսի (Ցելեբես), Արևմտյան Իրիան (Նոր Գվինեայի արևմտյան մասը) և հարյուրավոր այլ մանր կղզիներ։ Ինդոնեզիայի ընդհանուր տարածությունը հավասար է 1 միլիոն 904 հազար քառակուսի կիլոմետրի, իսկ բնակչությունը կազմում է մոտ 80 միլիոն մարդ։

Թվարկած կղզիներից ամենակարևորը Ճավան է, որն ամբողջ երկրի քաղաքական և տնտեսական կենտրոնն է։ Ինդոնեզիայի մայրաքաղաքը Ջակարտան է՝ մոտ 3 միլիոն բնակչությամբ։ Երկրի մյուս մեծ քաղաքներն են՝ Սուրաբայան, Սեմարանգը, Բանդունգը, Մակասարը, Մեդանը և այլն։ Ինդոնեզիայի ընդերքը հարուստ է բնական հանածոներով՝ նավթով, անագով և այլն։ Ինդոնեզիայի գյուղատնտեսական հիմնական մշակույթներն են թեյը, սուրճը, ծխախոտը, շաքարի եղեգնը, խինինը, կաուչուկը, սև պղպեղը և այլն, որոնք համարյա ամբողջապես արտահանվում են։

Արդեն 13 տարի է, ինչ գոյություն ունի Ինդոնեզական ռեսպուբլիկան (այն հռչակվել է 1945 թվականի օգոստոսի 17-ին)։ Երեք և կես դար տևած հոլանդական գաղութարարների վայրագ շահագործման և կողոպուտի տիրապետությունից ազատագրվելով, ինդոնեզական ժողովուրդը դուրս է եկել ազգային ինքնուրույն զարգացման ճանապարհը։ Ռեսպուբլիկայի հռչակումից հետո երկրում տեղի են ունեցել մեծ փոփոխություններ։ Վճռական քայլեր են արվել գաղութարարության տնտեսական հիմքերի վերացման ուղղությամբ, իրագործվել են մի շարք ագրարային վերափոխումներ, հիմք է դրվել ազգային արդյունաբերության զարգացմանը։

Ինդոնեզիան իր արտաքին քաղաքականությամբ հաստատապես հետևում է խաղաղ գոյակցության հայտնի հինգ սկզբունքներին։ Նա վճռաբար մերժում է իրեն ռազմական բլոկների մեջ ներգրավելու բոլոր փորձերը, որ անում են իմպերիալիստական պետությունները։ Ինդոնեզիան Բանդունգի պատմական հակաիմպերիալիստական, հակագաղութային կոնֆերանսի նախաձեռնողներից մեկն էր։

Սակայն պետության անկախության ապահովման և խաղաղասեր արտաքին քաղաքականության անցկացման ասպարեզում ինդոնեզական ժողովուրդը ստիպված է հաղթահարել մեծ դժվարություններ։ Գաղութակալության հետևանքներն ու մնացորդները դեռ ուժգին կերպով իրենց զգացնել են տալիս երկրի կյանքում։



Օտարերկրյա մոնոպոլիաները շարունակում են կարևոր դիրքեր գրավել երկրի էկոնոմիկայում և ֆինանսներում։

Իմպերիալիստները դաշն կնքած Ինդոնեզիայի առավել ռեակցիոն տարրերի հետ, երկրում ծավալել են ակտիվ քայքայիչ գործունեություն։ Ռեակցիայի կողմն է անցել, մասնավորապես, մուսուլմանական Մաշումի պարտիան, որը պառլամենտում 57 տեղ ուներ։ Ռեակցիոն ուժերի գործունեության համար պրովակացիաների օջախ և բազա հանդիսացավ Արևմտյան Իրիանի բուն ինդոնեզական տերիտորիան, որն ապօրինաբար մինչև այժմ օկուպացրել է Հոլանդիան։

Վերջին շրջանում իմպերիալիստները կատաղի փորձեր ձեռնարկեցին ակտիվացնելու համար սեպարատիստական շարժումը երկրում, որն ուղղված է կառավարող պարտիաների կոալիցիայի դեմ, ազգային շահերի դեմ։ Հայտնի է, որ 1955 թվականին ինդոնեզական պառլամենտի ընտրությունների ժամանակ կառավարական կոալիցիայի հիմք հանդիսացավ երկու խոշոր պարտիաների՝ Ինդոնեզիայի Ազգային պարտիայի և Նախդատուլ Ուլամա մուսուլմանական պարտիայի բլոկը։ Պառլամենտում սրանք ունեին 102 տեղ՝ 260-ից։ Արտաքին և ներքին քաղաքականության հիմնական հարցերում կառավարական կոալիցիային օժանդակում է կոմունիստական պարտիան, որը 1955 թվականին 39 դեպուտատական մանդատ էր ստացել։ Այս կոալիցիայի հիման վրա ստեղծված Ալի Սաս-

տրոամիջոյոյի կառավարությունը 1956 թվականի ըսկըզբներից ձեռնամուխ եղավ «Կլոր սեղանի» սարկացուցիչ պայմանագրերի (կնքված 1949 թ. Հաագայում. նախատեսում էին գաղութային բազմաթիվ արտոնությունների պահպանում Հոլանդիայի համար) վերացման և Սովետական Միության ու սոցիալիստական լագերի մյուս երկրների հետ բարեկամական հարաբերություններ հաստատելու գործին։ Այդ քաղաքականությունը հանդիպեց գաղութարարների դիմադրությանը։

Երկրի ներսում գաղութարարների հենարան են հանդիսանում ինդոնեզական կոմպրադոր բուրժուազիան, ֆեոդալ-կալվածատերերը և բյուրոկրատական տարրերը, որոնց իդեոլոգներն են Մաշումի և սոցիալիստական պարտիաների ղեկավարները։

1956 թվականի հոկտեմբեր-նոյեմբերից երկրի տարբեր մասերում ծայր առան հակակառավարական ելույթներ և խռովություններ, որոնք իրականացվում էին գլխավորապես «Դար-ուլ-իսլամ» տեռորիստական կազմակերպության միջոցով, որը սերտորեն կապված է գաղութարարների հետ և ֆինանսավորվում է նրանց կողմից։ Խռովության հիմնական կենտրոն դարձավ Սումատրա կղզին, որը հատկապես մոտ է ՍԵԱՏՕ ագրեսիվ բլոկի հենակետերին, իսկ կենտրոնական կառավարության իշխանությունն այնտեղ թույլ է օտարերկրյա մոնոպոլիաների առկայության հետևանքով։ Սումատրա կղզին (434 հազար քառակուսի կիլո-



մետր տարածությամբ և 11,5 մլն. բնակչությամբ) օժտված է բնական մեծ հարստություններով և ունի չափազանց բերրի հող, որը տալիս է կաուչուկ և նավթ։ Կաուչուկի արտադրության և նավթի հանույթի մեջ գերիշխում է օտարերկրյա կապիտալը՝ հոլանդական, ամերիկյան, անգլիական։ Չնայած մրցակցությանը, այդ մոնոպոլիաները միացյալ ճակատով հանդես են գալիս ինդոնեզական կառավարության ձեռնարկած այն միջոցառումների դեմ, որոնց նպատակն է նեղացնել օտարերկրյա մոնոպոլիաների գործունեության ոլորտը։

1956 թվականի նոյեմբերին Ինդոնեզիայի բանակի գլխավոր շտաբի պետի տեղակալ գնդապետ Լուբիսի գլխավորած սպաների խռովարար խումբը փորձեց տապալել կառավարությանը, սպանել Սուկառնոյին և Սաստրոամիջոյոյին ու երկրում հաստատել ռազմական դիկտատուրա։ Դավադրությունը հայտնաբերվեց և հաջողություն չունեցավ։ Ինդոնեզական թերթերը այն կապեցին Ալեն Դալեսի Ինդոնեզիա այցելելու հետ։ Անհաջողության մատնվելով, Լուբիսը և նրա համախոհները ձգտեցին իշխանությունը գրավել տեղերում՝ առաջին հերթին Սումատրայում և Սուլավեսիում և ստեղծել տեղական կառավարություններ։ Շուտով Կենտրոնական և Հյուսիսային Սումատրայում իշխանությունը գրավեցին փոխգնդապետ Ահմեդ Հուսեյնը և գնդապետ Սիմբոլոնը։ Նրանց օգնում են ամերիկյան, հոլանդական նավթային ընկերությունները, մաշումիստները և «Դար-ուլ-իսլամի» բանդաները։

Խռովարարները սկզբում պահանջում էին Սումատրային ավտոնոմիա տալ։ Պրեզիդենտ Սուկառնոն թեև խռովարար զինվորականների գործողությունները որակեց երդման խախտում, բայց փորձում էր կոնֆլիկտը լուծել խաղաղ ճանապարհով։ Իր պոստից հեռացված Սիմբոլոնը նույնիսկ թողնվեց բանակում և չձերբակալվեց։ Վճռական միջոցառումներ չձեռնարկվեցին նաև մյուս խռովարար սպաների նկատմամբ։

Սակայն ժամանակի ընթացքում միանգամայն պարզ էին դառնում դավադիրների նպատակները։ 1957 թվականի մարտին պրեզիդենտ Սուկառնոն երկիրը հայտարարեց ռազմական դրության մեջ և ամբողջ իշխանությունը վերցրեց իր ձեռքը, որպես Գերագույն Գլխավոր հրամանատար։ Կազմվեց Ջուանդայի արտապառլամենտական կառավարությունը, որը շարունակեց «Կլոր սեղանի» համաձայնագրերի լիկվիդացիայի քաղաքականությունը։ 1957 թվականի դեկտեմբերի 5-ին կառավարությունը հսկողություն հաստատեց Ինդոնեզիայում գործող հոլանդական ձեռնարկությունների նկատմամբ։

Ռեակցիան նորից հարձակման անցավ։ Հոլանդական ռազմանավերը մտան Ինդոնեզիայի ջրերը։ Խռովարարները Սումատրան հռչակեցին սեպարատ պետություն։ Տեռորի ակտեր կազմակերպվեցին պրեզիդենտ Սուկառնոյի և կոմունիստական պարտիայի ղեկավարների դեմ։

Այս տարվա փետրվարի 10-ին Կենտրոնական Սու-



մատրայի խռովարարների պարագլուխ Հուսեյնը, որն ամրացել էր Պադանգում, ուլտիմատումով պահանջեց Ջուանդայի կառավարության հրաժարականը։ Հատկանշական է, որ մյուս օրը Դալեսը իր ելույթում հավանություն տվեց խռովարարների այդ պահանջին։ Վերջիններս ստեղծեցին Մաշումի պարտիայի անդամ Շաֆրուդդինի կառավարությունը, որը պետք է փոխարիներ Ջուանդայի կառավարությանը։

Պրեզիդենտ Սուկառնոն հրաման արձակեց ձերբակալել ապստամբների պարագլուխներին՝ և վճռական գործողություններ սկսել խռովարարների դեմ։

Չնայած իմպերիալիստական պետությունների բացահայտ միջամտությանը, Ինդոնեզիայի կառավարությունը վճռականորեն ձեռնամուխ եղավ խռովության վերացմանը։ Այժմ այն արդեն հիմնականում պարտված է Սումատրայում։ Մարտերը շարունակվում են Ցելեբեսում։ Խռովարարները ըստ էության ոչ մի զգալի քաղաքական բազա չունեն երկրում։

Սումատրայում և Ցելեբեսում հակակառավարական խռովություն հրահրած իմպերիալիստական շրջանները ապստամբներին զենք, ռազմամթերք ու հանդերձանք են մատակարարում։ Ինդոնեզիայի քաղաքների ու գյուղերի վրա հարձակումներ են գործում ամերիկյան, չանկայշիական ինքնաթիռները։

Մայիսի 14-ին Սովետական Միության կառավարության հրապարակած հայտարարությունը վճռականորեն դատապարտեց օտար տերությունների միջամտու-

թյանը ինդոնեզական ժողովրդի գործերին և նրանց ագրեսիվ գործողությունները Ինդոնեզիայի սուվերեն ռեսպուբլիկայի դեմ։ ՍՍՌՄ կառավարությունը հայտարարեց, որ այդ բոլոր ակտերը ոտնահարում են ՄԱԿ-ի Կանոնադրության սկզբունքները, լարվածության օջախ ստեղծում և լուրջ սպառնալիք դառնում խաղաղության համար։

Ինդոնեզական ժողովուրդը հակահարված է տալիս խռովարարներին։ Հենց սկզբից նա մասսայական միտինգներում և ցույցերում անվերապահորեն հանդես եկավ երկրի պառակտման քաղաքականության դեմ, ի պաշտպանություն կենտրոնական կառավարության և ազգային միասնության։ Ժողովրդի և կառավարության միասնությունը, ինչպես հայտարարել է կոմպարտիայի Գլխավոր քարտուղար Այդիտը, այն բանի երաշխիքն է, որ խռովարարները կպարտվեն։ Ներքին քաղաքական և տնտեսական բարդ իրադրության մեջ, գաղութարարների բացահայտ միջամտության պայմաններում, Ինդոնեզիայի ազգային պրոգրեսիվ ուժերը, որոնց առաջին շարքերումն են կոմունիստները, ծանր պայքար են մղում Ռեսպուբլիկան և նրա դեմոկրատական նվաճումները պաշտպանելու համար։

Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ
Պատմ. գիտ. թեկնածու

---

## СОДЕРЖАНИЕ

Стр.

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



### СЕЛЬСКОХОЗЯЙСТВЕННЫЕ ТЕМЫ



### В СТРАНАХ НАРОДНОЙ ДЕМОКРАТИИ



### СПРАВОЧНЫЙ ОТДЕЛ



---



Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ